Պրոլետարնե՛ր բոլոր յերկրների, միացե՛ք


Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 5 (83)


Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն ՅԵՐԵՎԱՆ—1940 թ.

Պրոլետարներ բոլոր յերկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ՅԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 5 (83)

Հայկական ԽՍՀ ԺԿԽ-ին կից «ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
Հրատարակչություն ՅԵՐԵՎԱՆ—1940 թ.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



# ՄԱՐՏԻ 18-Ը ՓԱՐԻԶՅԱՆ ԿՈՄՈՒՆԱՅԻ ՕՐՆ Է

*1871 թվի մարտի* 18-ը *նշանակալից դատաներից մեկն է հանդիսանում միջազգային պրոլետարիատի և համայն աշխատավոր մարդկության ազատագրական պայքարի պատմության մեջ: Այդ օրը Փարիզի բանվորները տապալեցին բուրժուազիայի իշխանությունը և հաստատեցին իրենց իշխանությունը— կոմունան:*

*Փարիզյան կոմունան դիմացավ* 72 *օր, բայց նրա հիշատակն ապրում է և ապրի*

ապրի: Անմահ են կոմունայի— բուրժուական պետական մեքենան փշրելու և պրոլետարիատի դիկտատուրա հաստատելու ուղղությամբ բանվոր դասակարգի կատարած այդ առաջին փորձի— մեծ գործերն ու դասերը: Անմահ են հեղափոխական Փարիզի հերոսական մարտիկների սխրագործությունները, մարտիկներ, վորոնք անձնազոհաբար պաշտպանեցին մայրենի քաղաքի յուրաքանչյուր թիզ հողը:

Միջազգային պրոլետարիատի մեծ ուսուցիչները— Մարքսը և Էնգելսը— ջերմորեն վողջունեցին կոմունան: Նրանք տվին նրա հոյակապ փորձի հանրագումարը: Նրանք ոգնեցին կոմունարներին, վորոնց դեմ զինվեց վողջ համաշխարհային ռեակցիան:

Նրանց հանճարեղ աշակերտները Լենինը և Ստալինը կոմունայի դասերով եյին ղեկավարվում, յերբ նախապատրաստում և ղեկավարում եյին Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ հեղափոխությունը, ապա և կազմակերպում աշխարհիս առաջին սոցիալիստական տերության պաշտպանությունն ու շինարարությունը:

Միջազգային պրոլետարիատը տարեց-



տարի նշում է փարիզյան կոմունայի որը: Նա իր մարտական դրոշակներն է խոնարհեցնում նրա հերոսական մարտիկների հիշատակի առաջ և կատարում իր ուժերի ինտերնացիոնալ մարտական ստուգատես:

Այս տարի համայն աշխարհի աշխատավորները մարտի 18-ի որը համախմբում են իրենց ուժերը՝ պայքարելու անգլո-ֆրանսիական բլոկի կողմից սկսված և հրահրված պատերազմի անհապաղ դադարեցման համար: Մարտի 18-ը իմպերիալիստների հակախորհրդային մեքենայությունների դեմ պայքարելու որն է, խաղաղության, ազատության և սոցիալիզմի ամրոցը, համաշխարհային պրոլետարիատի հայրենիքը, նրա պարծանքն ու հույսը հանդիսացող Խորհրդային Միության հետ բոլոր յերկրների աշխատավորության յեղբայրական համերաշխության որը: Դա խաղաղության, հացի և ազատության համար պայքարելու որըն է, կապիտալիստական ռեակցիայի և սպիտակ տեռորի դեմ պայքարելու որը, մարտական ինտերնացիոնալիզմի և հեղափոխության մարտիկներին ոգնող միջազգային կազմակերպության ամրացման որը, ՄՈՊՐ-ի որը:

# ԿՈՄՄՈՒՆԱՅԻ ՀՌՉԱԿՈՒՄԸ, ՆՐԱ ՊԱՅՔԱՐԸ ՅԵՎ ԴԱՍԵՐԸ

1870 թվի սեպտեմբերի յերկուսին ֆրանսիական բանակը պրուսական զորքերի կողմից ջարդվեց Սեդանի տակ մղված ճակատամարտում և համարյա ամբողջապես գերի ընկավ, Նապոլեոն III կայսեր հետ միասին: Յերկու օր անց, յերբ Փարիզում հայտնի դարձավ այդ ջարդը, ժողովրդական մասսաները վոտքի յելան, միապետությունը տապալվեց, հանրապետություն հռչակվեց:

Այդպիսին են այն դեպքերը, վորոնք անմիջաբար նախորդեցին 1871 թվի մարտի 18-ի բանվորական հեղափոխությանը:

Ֆրանկո-պրուսական պատերազմն սկսվեց Սեդանից վոչ շատ ժամանակ առաջ, 1870 թվի հուլիսի 19-ին: Այդ պատերազմը նախապատրաստել և առաջացրել եր ավանտյուրիստ ու խաբեբա Նապոլեոն III-ի վողջ նախընթաց քաղաքականությունը, մի մարդու, վորը պետական հեղաշրջում եր կատարել և իշխանությունը զավթել 1851 թվի դեկտեմբերի 2-ին: Դեռևս 60-ական թվականների յերկրորդ կիսում ակներև եյին



բոլոր նշաններն այն բանի, վոր նոր, այսպես կոչված յերկրորդ կայսրությունը (առաջինը համարվում ե Նապոլեոն I-ի կայսրությունը) գնում ե դեպի կրախը: Ֆինանսիական ուռցրած ապարատը, պալատի փարթամությունը, գաղութային ավանտյուրաները նորանոր զոհեր եյին պահանջում քայքայված ժողովրդից, մասսաների դժգոհությունն ուժեղանում եր, սպառնում եր պայթել: Կառավարող կլիկը յելք եր վորոնում պատերազմի մեջ, վորը թեքեր ժողովրդի ուշադրությունը և դրա հետ մեկտեղ պայմաններ ստեղծեր աճող բանվորական շարժման հետ արագ դատաստան տեսնելու համար: Թե ի՛նչպիսի մտահոգություններ եր պատճառում նա Նապոլեոն III-ի կառավարությանը, այդ մասին վկայում են այն տեռորիստական միջոցառումները, վորոնց ձեռնարկեց նա Լուարի ավազանի գործադուլավոր ածխագործների դեմ 1869 թվին, մետաղագործ բանվորների դեմ 1870 թվին և այլն:

Սակայն Ֆրանսիայում կայսերական ռեժիմի տապալումից և հանրապետության հռչակումից հետո իշխանության գլուխն անցավ այնպիսի մի կառավարություն,

վորը կազմված եր բուրժուազիայի ներկայացուցիչներից: Նա ֆրանսիական ժողովրդից ավելի շատ եր վախենում, քան յերկրի սահմանները ներխուժած պրուսական զորքերից: Այդ կառավարության նպատակն եր վոչ թե հակահարված տալ արտաքին թշնամուն, այլ ճնշել հեղափոխության վերահաս վտանգը: Այդ կառավարությունը, վորն իրեն անվանում եր «ազգային պաշտպանության» կառավարություն, իրականության մեջ ազգային դավաճանության կառավարություն եր հանդիսանում: Այն ամիսների ընթացքում, վորոնք հաջորդեցին նրա ձևավորմանը, նա բազմիցս ճնշեց բանվորների յելույթները, վորոնք պահանջում եյին վճռական հակահարված կազմակերպել պրուսիացիների դեմ:

1871 թվի հունվարի 28-ին կառավարությունը պրուսիացիների հետ համաձայնագիր ստորագրեց: Նա պարտավորվում եր գերմանացիներին հանձնել Փարիզի կարեվորագույն ամրությունները, հսկայական կոնտրիբուցիա վճարել և ընտրել Ազգային ժողով, վորը պետք է ստորագրեր այդ խայտառակ ու ծանր հաշտության պայմանները:



Փետրվարի 13-ին Բորդո քաղաքում բացվեց Ազգային ժողովը, վորն ընտրված եր պրուսիական սվինների ճնշման տակ և իր ճնշող մեծամասնությամբ բաղկացած եր միապետականներից ու այլ ռեակցիոներներից: Նա իշխանության գլուխը կանգնեցրեց դահիճ և մարդասպան Տիերին: Ազգային ժողովը փետրվարի 27-ին ընդունեց հաղթական պրուսացու թելադրած հաշտության պայմանները, այն է՝ հրաժարվել Ելզաս-Լոտարինգիայից, 5 միլիարդ ֆրանկ կոնտրիբուցիա վճարել: Դրանից հետո «պարլամենտը» տեղափոխվեց Վերսալ, վորը դարձավ ռեակցիայի և դավաճանության կենտրոնը: Փարիզը դարձավ հեղափոխական և հայրենասիրական շարժման կենտրոնը: Պրուսիացիների առջև վերջնականապես կապիտուլյացիայի յենթարկվելուց հետո, Տիերը վորոշեց ձեռնամուխ լինել «ներքին թշնամու» ճնշմանը: Փարիզում սկսվեցին հեղափոխական բանվորների դատավարություններ, հանրապետական մամուլի հալածանքներ և վորոշվեց զինաթափ անել ու ցրել աշխատավորներից բաղկացած ազգային գվարդիան:

Կառավարությունը հրաման տվեց հրա-

մանդատարության մարտի 18-ի առավոտյան զինաթափ անել ազգային գվարդիայի ջոկատները և գրավել այն թնդանոթները, որ ունեին բանվորներն իրենց հանգանակած փողով։ Բայց այդ պլանը չհաջողվեց։ Յերբ զորքերը յերևացին Մոնմառտի ռայոնում, որտեղ գտնվում էին ազգային գվարդիայի հրանոթները, բանվորները և բանվորուհիները դիմադրություն ցույց տվին, զինվորներն անցան նրանց կողմը։ Խուճապահար կառավարությունը Փարիզից փախավ Վերսալ։ Տիերի և նրա մինիստրների հետ միասին Վերսալ փախան բարձրաստիճան չինովնիկները, կապիտալիստները, գեներալները։ Իշխանությունն անցավ բանվորների ձեռքը։ Այդ կերպ ծավալվեցին իրադարձությունները, որոնք հանգեցին պրոլետարական հեղափոխության հաղթանակին Ֆրանսիայի մայրաքաղաքում։

Բանվորների կողմից իշխանությունը գրավելուց ութ օր հետո, Փարիզում կատարվեցին նոր կառավարության— կոմունայի ընտրությունները։ Կոմունայի խորհրդի մեջ մտան տասնյակ բանվորներ, քաղաքային չքավորության, աշխատավոր



ինտելիգենցիայի ներկայացուցիչներ։ Հազարավոր պրոլետարներ առաջադրվեցին իշխանության այն նոր օրգանների ղեկավար պոստերում, որոնք փոխարինեցին հին, կապիտալիստական պետական ապարատին։ Հենց այդ փաստի, շահագործող դասակարգերի ստեղծած պետական մեքենան փշրելու, պրոլետարական դիկտատուրայի պետություն ստեղծելու փաստի մեջ է կայանում կոմունայի գլխավոր, համաշխարհային պատմական նվաճումը։ Այդ առանձնապես ընդգծում էին Մարքսն ու Ենգելսը։

Կոմունան լիկվիդացիայի յենթարկեց հին բանակը և պաշտպանության գործը հանձնեց զինված ժողովրդի ձեռքը։ Վճռական հարված հասցվեց կաթոլիկական յեկեղեցուն, խավարամոլության և ռեակցիայի այդ կենտրոնին։ Յեկեղեցին անջատվեց պետությունից, նրա առանձնաշնորհումները լիկվիդացիայի յենթարկվեցին, դպրոցն անջատվեց յեկեղեցուց, մտցվեց ձրի ուսուցում։ Ամբողջ գծով անցկացվեց բոլոր պաշտոնատար անձանց ընտրովիություն և հաշվետվություն ժողովրդի առաջ։

Փարիզի բանվորական իշխանությունը

ձեռնամուխ յեղավ արտադրության վերա-
հսկողություն ստեղծելու գործին: Վեր-
սալ փախած կապիտալիստների ձեռնար-
կությունները հանձնվեցին բանվորական
կոլեկտիվներին: Ութժամյա աշխատանքա-
յին որ սահմանվեց, միջոցներ ձեռք առն-
վեցին աշխատանքի պայմանները բարելա-
վելու համար: Լոմբարդներում դրավ դըր-
ված իրերն անհատույց կերպով վերա-
դարձվեցին քաղաքային չքավորությանը:
Իր կոչերից մեկում կոմունան ազդարա-
րեց հետեվյալ լոզունգը— «Ամբողջ հողը
գյուղացիներին, մեքենաները՝ բանվորնե-
րին, աշխատանք՝ բոլորի համար»: Բայց
կոմունան չկարողացավ իր նախագծած
մեծ վերափոխումներն իրագործել: Դրան
խանգարեցին նրա ղեկավարության ներ-
սում յեղած տարաձայնությունները և այն
փաստը, վոր նա ստիպված յեղավ բոլոր
ուժերը և ուշադրությունը նվիրել ինտեր-
վենտների կողմից աջակցություն ստացող
վերսալյան հակահեղափոխության դեմ
պաշտպանվելու գործին:

Վերսալյան կառավարության պարա-
գլուխ Տիերը հենվում եր կոմունայի նկատ-
մամբ դասակարգային ատելությամբ միա-



վորված յեվրոպական ռեակցիայի օգնու-
թյան վրա: Ֆրանսիական բանակի մեծ
մասն այն ժամանակ գտնվում եր պրու-
սիական գերության մեջ: Տիերը դիմեց
պրուսիական կառավարության պարագլուխ
Բիսմարկին՝ խնդրելով ազատել գերիներին
վերսալյան բանակն ուժեղացնելու համար:
Բիսմարկն ազատեց ավելի քան 100 հա-
զար Ֆրանսիացի գերի զինվորների և դրեց
Վերսալի տրամադրության տակ: Այդ զին-
վորների մեջ, վորոնք ճնշող մեծամասնու-
թյամբ գյուղացիներ եյին, ատելություն
եյին հրահրում կոմունայի հանդեպ, չա-
րաշահելով նրանց տուն վերադառնալու
տենչը և Փարիզի բանվորներին մեղադրե-
լով այն բանում, թե նրանք են ձգձգում
պատերազմը:

Պաշարված Փարիզում սովն եր թագա-
վորում: Քաղաքը հեղեղված եր լրտեսնե-
րով, դիվերսանտներով և տեռորիստնե-
րով, վորոնք համարյա անարգել կերպով
գալիս եյին Վերսալից՝ կոմունարների թույլ
վերահսկողության և անբավարար աչալըր-
ջության հետեվանքով: Տիերի ագենտները
խուճապային լուրեր եյին սերմանում, դի-
վերսիաներ եյին կազմակերպում, ամեն

տեսակի քայքայիչ աշխատանք էին կատարում։ Փոխանակ անխնա դատաստան տեսնելու դասակարգային թշնամու ագենտների հետ, կոմունարները անվճռականություն, երբեմն էլ անթույլատրելի մեծահոգություն էին ցուցաբերում։ «Փարիզյան կոմունարները խիստ մեղմ էին վերսալցիների նկատմամբ, որի համար նրանց լիակատար հիմունքով իր ժամանակին հայհոյեց Մարքսը։ Իսկ իրենց այդ մեղմության համար նրանք հատուցեցին այն բանով, որ, երբ Տիերը Փարիզ մտավ, տասնյակ հազար բանվորներ գնդակահարվեցին վերսալցիների ձեռքով», (Ստալին, «Լենինիզմի հարցերը», 9-րդ հրատ., էջ 313)։ Կոմունան շատ ուշ սկսեց դատի տալ թունդ հակահեղափոխականներին. ի պատասխան վերսալցիների գազանության՝ նա պատանդներ վերցրեց բուրժուազիայից, բայց այդ բանն արվեց շատ ուշ։

Փարիզյան կոմունան մինչև վերջը հետևողական չեղավ նաև իր սոցիալական միջոցառումների խնդրում։ Նա չհամարձակվեց բռնագրավել վերսալցիների գույքը, ձեռք չտվեց Ֆրանսիական բանկում պահվող միլիոններին։



Կոմունայի խոշորագույն սխալը հանդիսացավ ռազմական գործի թերագնահատումը, վերսալցիների դեմ բացառապես պաշտպանական տակտիկա կիրառելը։ Կոմունարները ձեռքից բաց թողին թշնամուն ջարդելու համար հզոր, կենտրոնացված բանակ ստեղծելու հնարավորությունը, չհասկացան Փարիզն ամրացնելու անհրաժեշտությունը։ Դա վերսալցիներին հնարավորություն տվեց մայիսի 21-ին, այն բանից հետո, երբ նրանց լրտեսները հաղորդեցին, որ Փարիզի Սեն-կլու արվարձանի դարպասը ոչ ոքի կողմից չի պահպանվում,— այդ դարպասից ներս խուժել և կոմունային վճռական հարված հասցնել։

Փարիզյան կոմունան մեկուսացած էր մնացած երկրից։ Կոմունարներին չհաջողվեց կապ հաստատել այն քաղաքների հետ, ուր ապստամբություններ էին տեղի ունենում բանվորական իշխանության լոզունգով։ Կոմունարները չկարողացան հենվել գյուղացիության վրա, մարտական դաշինք կնքել նրա հետ, իրենց հետևից տանել նրան։ «48 և 71 թվականների հեղափոխությունները Ֆրանսիայում կործանվեցին գլխավորապես այն պատճառով,

վոր գյուղացիական ռեզերվները բուրժուազիայի կողմը գտնվեցին: Հոկտեմբերյան հեղափոխությունը հաղթեց այն պատճառով, վոր կարողացավ բուրժուազիայից խլել նրա գյուղացիական ռեզերվները, կարողացավ այդ ռեզերվները նվաճել պրոլետարիատի կողմը, և այդ հեղափոխության մեջ պրոլետարիատը յեղավ քաղաքի ու գյուղի աշխատավոր մարդկանց միլիոնավոր մասսաների միակ ղեկավարող ուժը» (Ստալին, «Լենինիզմի հարցերը», 9-րդ հրատ., եջ 122, Հայկուսհրատ):

Կոմունայի գլխավոր դժբախտությունը պրոլետարական կուսակցության բացակայությունն եր, կուսակցություն, վորը կարողանար ղեկավարել հեղափոխությունը և կանխել կոմունայի այն սխալները, վորոնք կատաստրոֆի հանգեցին: Դեռևս մինչև մարտի 18-ի ապստամբությունը, Մարքսը քանիցս նախազգուշացրել եր Փարիզի բանվորներին վաղաժամ յելույթի նկատմամբ, պնդելով, վոր նախ և առաջ Ֆրանսիայում ստեղծվի հեղափոխական, պայքարը նախապատրաստելու և ղեկավարելու ընդունակ պրոլետարական կուսակցություն: Կոմունայի ղեկավարության մեջ



անհամերաշխություն գոյություն ուներ: «... հեղափոխության ղեկավարությունը բաժանում եյին իրենց միջև յերկու կուսակցություններ, վորոնցից վոչ մեկին կոմունիստական կուսակցություն չի կարելի անվանել» (Ստալին, «Լենինիզմի հարցերը», 9-րդ հրատ., եջ 141, Հայկուսհրատ):

Այս բոլոր հանգամանքները ճակատագրական դեր խաղացին կոմունայի պայքարում և կանխորոշեցին նրա անկումը:

Կոմունարները կռվում եյին առյուծների պես: Կոմունայի հերոսական պաշտպանների թվում կային բազմաթիվ ոտարերկրացի հեղափոխականներ, քաղաքական եմիգրանտներ, վորոնք իրենց անթառամ փառքով պսակեցին: Փարիզ ներխուժելով, վերսալցիներն այնտեղ հանդիպեցին կատաղի դիմադրության, նրանք գերակշռեցին միմիայն շնորհիվ իրենց հսկայական թվական գերազանցության:

Մայիսի 21-ից մինչև 28-ը, յերբ ընկավ վերջին բարիկադը, նրանք այնպիսի մի կոտորած սարքեցին, վորը պատմության մեջ ե մտել մայիսյան արյունոտ շաբաթ անունով: Կոմունայի անկումից հետո սկսվեց սպիտակ տեռորի խրախճանքը: 30 հա-

զար գնդակահարվածներ, զինվորական դատարանների կողմից դատապարտված 45 հազար կալանավորներ, վորոնցից շատերը մահապատժի յենթարկվեցին, հազարավոր մարդիկ, վորոնք ուղարկվեցին տաժանակիր աշխատանքի և աքսորաբնակության— այդպիսիք են հակահեղափոխության սարքած դատաստանի արդյունքները:

Ահա թե ինչ է գրում կոմունայի ժամանակակիցներից Մակսիմ Վիլյոմն իր հիշողությունների մեջ. «գնդակահարում եյին վոչ միայն Լյուքսեմբուրգում (Սենատի շենքը) և բակերում, ուր դատավճիռներ եյին հանում, գնդակահարում եյին ամեն տեղ— նրբանցքներում, տների միջանցքներում, շինարարությունների վրա, ամենուրեք, ուր վորևե պատ եր ճարվում՝ գերիներին նրա դիմաց կանգնեցնելու համար: Սենայի ափերն առանձնապես մեծ թվով արյունոտ դատաստանների համր ականատեսները յեղան: Պոն Նյոֆ կամուրջի կամարների տակ դատաստան եր տեղի ունենում մի ամբողջ շաբաթվա ընթացքում: Ճաշից հետո զուգված հասարակությունը գնում եր դիտելու գնդակահարությունների տեսարանը: Շքեղ հագնված կանայք իրենց



ամուսինների հետ գնում եյին դիտելու գնդակահարությունները, ինչպես գնում են թատերական ներկայացում դիտելու: Բարձր ընտանիքների որիորդները, մեծաշուք զգեստներով, բարձրաձայն ծիծաղում եյին, հետաքրքրությամբ նայելով այդ հազվադեպ տեսարանին: Լատինական արվարձանի (համալսարանական ռայոնի) վոչ մեծ տերիտորիայում գործում եյին վեց զինվորական դատարաններ: Գլխավոր սպանդանոցը Լյուքսեմբուրգումն եր գտնվում, ուր սպանվեց 1100 բանվոր: Բայց գնդակահարում եյին նաև Դրամահատարանում, ոբսերվատորիայում, իրավաբանական ֆակուլտետի շենքում և պոլիտեխնիկական դպրոցում: Վերսալցիները յուրաքանչյուր գրավված արվարձանում զինվորական դատարան եյին բաց անում՝ ինչքան կարելի յե շատ մարդ սպանելու ուղղակի առաջադրությամբ»:

«Հողը ծածկված է նրանց դիակներով»— հեռագրում եր արնախում դահիճ Տիերը վոստիկանական պրեֆեկտներին: Գնդակահարում եյին յերեխաներին և պատանիներին, կանանց և ծերունիներին: Կոմունայի պատմաբան Տալեսը գրում եր. «Փարիզը

 

դարձել է ընդարձակ մի գերեզմանոց, դիակները թափվում են ամեն տեղ— գերեզմանոցներում, պարապուրտներում, շինարարություններում: Մեռածների դիակներ են նետված Բերսիի գերեզմանոցի ջրհորները: Նրանց այրում են ամրոցների կազեմատներում: Տուր Սեն Ժակ սկվերում հողի տակից ցցված են ձեռքեր, ոտքեր, հաճախ նույնիսկ դեմքեր: Դիակի հոտ է սփռված Փարիզի վրա»:

Այդ կերպ կատարեց իր հաղթանակն ուրախությունից խելացնորված բուրժուազիան, որին հաջողվեց ոտքը դնել Փարիզի պարտված պրոլետարիատի կոկորդին:



Խորհրդային Միության բանվոր դասակարգը, որին ղեկավարում է Լենինի-Ստալինի կուսակցությունը, չկրկնեց կոմունայի սխալները: Լենինը և Ստալինը, հսկայական նշանակություն տալով կոմունայի փորձին, դաստիարակեցին և կոփեցին բոլշևիկյան հզոր կուսակցությունը, որի ղեկավարության ներքո կատարվեց հեղափոխություններից մեծագույնը, և



հաղթանակեց մեր յերկրում սոցիալիզմը: Խորհրդային պետությունը հանդիսացավ «... որոնվող և վերջապես, գտնված քաղաքական ձևը, որի շրջանակներում պետք է իրագործվի պրոլետարիատի տնտեսական ազատագրությունը, սոցիալիզմի լիակատար հաղթանակը:

Փարիզի կոմունան այդ ձևի սաղմն էր, Խորհրդային իշխանությունը նրա զարգացումն ու ավարտումն է» (Ստալին, «Լենինիզմի հարցերը», եջ 56, Հայկուսհրատ):

Խորհրդային ժողովուրդը ջարդեց իր բոլոր թշնամիներին— սպիտակ գվարդիականներին և ինտերվենտներին, ստեղծեց անպարտելի Կարմիր բանակ, կառուցեց անդասակարգ սոցիալիստական հասարակություն և ընկեր Ստալինի իմաստուն ղեկավարությամբ իրագործում է աստիճանական անցումը դեպի կոմունիզմ: Խորհրդային յերկրում գործում է Ստալինյան Սահմանադրությունը— աշխարհիս ամենադեմոկրատական սահմանադրությունը: Ամրանում է ԽՍՀՄ-ում բնակվող ժողովուրդների ստալինյան բարեկամությունը: Անչափ մեծացել է խորհրդային Միության տեսակարար կշիռը միջազգային արենա-

յում։ Իրականացվել է Արևմտյան Ուկրաինայի և Արևմտյան Բելոռուսիայի ժողովուրդների երազը, ժողովուրդներ, որոնց Կարմիր բանակն ազատագրեց լեհական պաների լծից։ Ամրացվեցին Խորհրդային Միության սահմանները Բալտիկայում՝ Էստոնիայի, Լատվիայի և Լիտվայի հետ փոխադարձ օգնության պայմանագիր կնքելու ճանապարհով։ Մոտենում է բազմաչարչար Ֆինն ժողովրդի ազատագրման ժամը, ժողովուրդ, որին եղբայրական օգնություն է ցույց տալիս Կարմիր բանակը՝ Խորհրդային Միության և Ֆինլանդիայի դեմոկրատական հանրապետության միջև կնքված փոխադարձ օգնության և բարեկամության պայմանագրի հիման վրա։

Իր մեծ նվաճումներով խորհրդային ժողովուրդը բաց է անում իր պատմության նոր էջը, համայն մարդկության կյանքի փայլուն էջը։ Դեպի հաղթանակած սոցիալիզմի հզոր երկիրը, որը կենսագործել է մարդկության կոմունարների իդեալները, ուղղված են կապիտալիստական ստրկության բեռան տակ տնքացող բոլոր ճնշվածների և շահագործվածների հուսալի հայացքները։



## ՍՊԻՏԱԿ ՏԵՌՈՐՆ Ի ՍՊԱՍ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՅԵՎ ՌԵԱԿՑԻԱՅԻ

Այն ժամանակ, երբ Խորհուրդների երկրում ծաղկում է նոր, բերկրալի ու երջանիկ կյանքը, գնալով ավելի յե թանձրանում երկրագնդի հինգ վեցերորդ մասը պատող խավարը, ուր տակավին իշխանության գլուխն է կանգնած կապիտալը։ Բայց կապիտալիզմն իր վերջին, իմպերիալիստական ստադիայում արդեն գտնվում է մահամերձ վիճակում, համակված է ընդհանուր ճգնաժամով։

Դատապարտված կապիտալիստական սիստեմի վերջին ուղին լուսավորված է իմպերիալիստական թալանչիական պատերազմների հրացոլքով, աշխարհի նոր վերաբաժանման համար առանձին իմպերիալիստական կլիկների միջև ծայր տված բզքտոցով։ Իմպերիալիստական բուրժուազիայի այդ արտաքին քաղաքականությունը անխզելիորեն կապված է նրա ներքին քաղաքականության— ռեակցիայի և սպիտակ տեռորի խրախճանքի հետ։ Ներկայումս պատերազմը դարձյալ համակել է վիթխարի տերիտորիաներ, այդ պատերազ

մի մեջ է քաշված մարդկության կեսից ավելին։ Ճապոնական իմպերիալիստները ծվատում են Չինաստանը, որը պաշտպանում է իր անկախությունը։ Եվրոպայի կենտրոնում պատերազմ է հրահրել անգլո-ֆրանսիական բլոկը, իբրև թե հանուն «դեմոկրատիայի» և «քաղաքակրթության», իսկ իրականության մեջ ֆրանսիական և անգլիական բանկիրների բորսայական սպեկուլյանտների, գաղութային պլանտատորների շահերի օգտին արդեն թալանվածը պահպանելու համար։ Անգլո-ֆրանսիական իմպերիալիստական բուրժուազիայի կողմն են անցել Երկրորդ Ինտերնացիոնալի պարագլուխները, ռեֆորմիստական պրոֆմիությունների լիդերները։ Նրանք ե՛լ ավելի վատ, ե՛լ ավելի ստոր ու զարշելի յեղանակով կրկնում են այն դավաճանությունն ու մատնությունը, որոնցով նրանք նշանավորեցին 1914 թվի օգոստոսյան օրերը։ Նրանք չարամիտ կամպանիա յեն մղում Խորհրդային Միության դեմ, հանդես գալով լոնդոնյան բանկերի, փարիզյան «200 ընտանիքների» վարձու լակեյների դերում, սնանկացած լեհական գինվորականության և Մաններհայմի ֆին-



նական ավազակախմբերի պաշտպանների դերում։ Բլյումները և Եատլիները, Սիտրինները և Ժուոները Հռոմի պապի հետ հավասար չափով հանդիսանում են պատերազմի հրձիգների կատաղի ագենտները, որ ձգտում են ԱՄՆ-ի՝ ռազմական մատակարարումներից հարստացող ռեակցիոն բուրժուազիայի հետ միասին համաշխարհային պատերազմ բորբոքել, պատերազմական հրդեհի նոր օջախներ ստեղծել Սկանդինավիայում, Եվրոպայի հարավ-արևելքում, Մերձավոր Արևելքում։

Բայց բուրժուազիան շատ լավ է հիշում առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի դասերը, ապստամբությունները և հեղափոխությունները, որոնք հանդեցին գահերի փլուզման։ Դողը բռնում է կառավարող դասակարգերին, յերբ նրանք հիշում են Հոկտեմբերյան Սոցիալիստական Հեղափոխությունը, որը նոր երա բաց արեց մարդկության պատմության մեջ։ Ահա թե ինչո՛ւ ե՛լ ավելի մեծ կատաղությամբ, արյան ե՛լ ավելի մեծ ծարավով, քան սրանից 69 տարի առաջ, բուրժուազիան հարձակվում է հեղափոխական բանվորների վրա։ Նա իրեն

խնդիր է առաջադրում լիկվիդացիայի ենթարկել բանվոր դասակարգի բոլոր նվաճումներն ու իրավունքները, վերջ տալ դեմոկրատիայի մնացորդներին, հետ դարձնել պատմության անիվը: Բանվորական շարժման ճնշումը, աշխատավորների հեղափոխական, կոմունիստական ավանդարդի հետապնդումը անգլո-ֆրանսիական իմպերիալիզմի և նրա գլխավոր շտաբների ռազմա-մոբիլիզացիոն պլանի բաղկացուցիչ օրգանական մասերից մեկն է: Այդ հաստատվում է անթիվ փաստերով:

Ֆրանսիայում դեռևս պատերազմը հայտարարելուց մեկ շաբաթ առաջ արգելվեց «Յումանիտե»-ն: Դրանից հետո արգելվեց նաև կոմկուսակցության և նրա ազդեցության տակ գտնվող բոլոր մասսայական կազմակերպությունների մնացած մամուլը: Պատերազմը սկսվելուց անմիջապես հետո կոմկուսակցությունը և ավելի քան 250 պրոֆմիութենական, կուլտուրական, սպորտային և այլ կազմակերպություններ, այդ թվում «Ժողովրդական օգնությունը» (ՄՕՊՐ-ի ֆրանսիական սեկցիան), որենքից դուրս հայտարարվեցին, նրանց գույքը բռնագրավման ենթարկվեց: Ավելի



քան 7000 կոմունիստներ և պատերազմի այլ հակառակորդներ ձերբակալվեցին, այդ թվում դեպուտատների պալատի կոմունիստական ֆրակցիայի 38 անդամները, 317 քաղաքագլուխներ և մունիցիպալ խորհրդականներ, Աշխատանքի ընդհանուր կոնֆեդերացիայի ղեկավարության մեջ մտնող 6 կոմունիստները: Սոցիալիստական և ռեֆորմիստական լիդերները— Լեոն Բլյումը, Ժուոն և ընկ. վողջունում են Դալադյեյի կաբինետի այդ տեռորիստական միջոցառումները և կոչ են անում հետագա ռեպրեսիաների: Դրանից բացի, Ֆրանսիայի բանտերում և համակենտրոնացման ճամբարներում են գտնվում 200 հազար իսպանացի փախստականներ և 30 հազար քաղաքական էմիգրանտներ Գերմանիայից, Ավստրիայից, Չեխո-սլովակիայից, Լեհաստանից, Ռումինիայից, Հարավ պալվիայից և այլ երկրներից: Նրանցից շատերն արտաքսված են ֆրանսիական հասարակածային Աֆրիկան: Առանձնապես ծանր է ինտերնացիոնալ բրիգադաների կալանավոր մարտիկների դրությունը. 6000 մարտիկների մեջ կան հարյուրավոր հաշմանդամներ, Նրանց հարկադրում են մնացածների հետ միասին

ծանր աշխատանք կատարել ֆրանսիական, լեհական և սլովակ գվարդիական սպաների վերահսկողության տակ:

Ֆրանսիական ռեակցիոներները չեն բավականանում նրանով, վոր դատարանները յերկարամյա բանտարկության դատավճիռներ են հանում հակապատերազմական թռուցիկներ տարածելու և կոմկուսակցությանը պատկանելու համար: Տիերի դահիճների դերի թեկնածուները— «մարտական խաչերի» ձախողակ պարագլուխ դեպուտատ Իբառնագարեն և Ֆիլիպ Անրիոն պահանջում են գնդակահարել կոմունիստներին: Ռեակցիոն մամուլը մոլեգնում է, ձգտելով անխնա դատաստանի հասնել կոմունիստ դեպուտատների նկատմամբ, վորոնք հանձնված են ռազմական դատարանին: Ֆրանսիական կոմկուսակցության գլխավոր քարտուղար ընկ. Տորեզը հեռակայորեն դատապարտվել է 6 տարվա բանտարկության:

Կայենի տաժանավայրում (Ֆրանսիական Գվիանա գաղութը Հարավային Ամերիկայում) հյուծվում են ավելի քան 3000 հնդկաչին հեղափոխականներ, վորոնք դատապարտվել են դեռևս 7 տարի առաջ: Նրանց



պահում են շղթայակապ, խոշտանգում են և յենթարկում ամեն տեսակի բարոյական ու ֆիզիկական տանջանքների: Նույնպիսի ռեժիմ է տիրում Պոուլո Կոնդորի տաժանավայրում:

Անգլիայում պատերազմը հայտարարելուց անմիջապես հետո բանտ նետվեցին 60 հազար քաղաքական եմիգրանտներ, արգելվեցին տասնյակ բանվորական ժողովներ, ձերբակալվեցին հակապատերազմական թռուցիկներ տարածող մարդիկ: Մոլեգնում է պատերազմական ցենզուրան: Այն բանվորները, վորոնք հակապատերազմական տրամադրություններ ունենալու կասկածի տակ են գտնվում, արձակվում են լեյբորիստական կամ ռեֆորմիստական չինովնիկների մատնությամբ:

Իրենց դաժանությամբ առանձնապես աչքի յեն ընկնում անգլիական գաղութային իշխանությունները: Հնդկաստանի Դելի քաղաքում 1939 թվի դեկտեմբերի վերջում մահապատժի յենթարկվեցին 12 հոգի «Հնդկաստանի պաշտպանության» որենքը խախտելու համար: Այդ որենքն ասում է, վոր մահապատժի յե յենթակա ամեն մարդ, «ով հրատարակում է այնպիսի դե-

կուցում կամ հողված, վորը,— անկախ այն բանից՝ համապատասխանո՞ւմ է արդյոք իրականությանը, թե՞ վոչ,— կարող է դժգոհություն առաջացնել կառավարության նկատմամբ կամ խրախուսել դասակարգային թշնամանքը»: Նույն օրենքի հիման վրա Պենջաբի նահանգում ձերբակալվեցին 2000 գյուղացիներ, վորոնք պահանջում եյին պակասեցնել հարկերը: Մայսոր իշխանության մեջ ձերբակալվեցին նույնքան գյուղացիներ: Պատայում (Բիհար նահանգ) բանտ նետվեցին Ազգային կոնգրեսի 4 անդամ, իսկ Ջալանդարում (Պենջաբ)՝ գյուղացիական միության նախագահը, վորը հանդես եր յեկել հակապատերազմական ճառով: Հունվարյան (1940 թ.) հակապատերազմական յելույթների և «քաղցի բունտերի» ժամանակ, վորոնք ծավալվեցին Հնդկաստանի շատ ռայոններում, վոստիկանությունը և զորքերը կրակ բաց արին ցուցարարների վրա, ամենուրեք մասսայական ձերբակալություններ կատարվեցին:

Սպիտակ ֆինլանդիայում մաններհայմտաններյան մարդասպանները, զգալով իրենց վախճանի մոտեցումը, գազանային



տեռոր են ծավալում բոլոր «կասկածելի» բանվորների և աշխատավորների դեմ, վորոնք վաղուց արդեն հաշվառման են յենթարկված սահնորդական բաժնի կողմից: Բնակավայրերը եվակուացիայի յենթարկելիս սպիտակ-ֆիննական իշխանությունները բռնի ուժով հեռացնում են տեղական բնակչությունը, կրակի տալով տներն ու գույքը և գնդակահարելով նրանց, ովքեր փորձում են մնալ իրենց օջախի մոտ: Հելսինկիում, Վիպուրիում (Վիբորգ) և այլ քաղաքներում մասսայական ձերբակալություններ են կատարված, որը-որին ավելանում է առանց դատի և քննության գնդակահարվողների թիվը: Գնդակահարում են Խորհրդային Միության նկատմամբ համակրանք տածելու համար, ֆինլանդական դեմոկրատական հանրապետության ժողովրդական կառավարության նկատմամբ համերաշխության յուրաքանչյուր խոսքի համար: Յերկրում հարություն է առել 1918 թվի դարհուրելի ռեժիմը, յերբ սպիտակ-ֆիննական կլիկը ցարական գեներալ Մաններհայմի գլխավորությամբ գնդակահարեց և բանտերում խոշտանգեց ավելի քան 35 հազար բանվոր

ների ու գյուղացիների: Վեցերորդ տարին է, ինչ սպիտակ-ֆիննական զնդանում հյուծվում է Ֆինլանդիայի բանվոր դասակարգի առաջնորդ, ֆիննական պրոլետարիատի սիրելին, քաջարի հեղափոխական Տոյվո Անտիկայնենը:

Իսպանիայում մինչև այժմ շարունակվում են ֆաշիստների կողմից գերի վերցված հանրապետականների մահապատիժները: Հենց միայն Մադրիդում կան 100 հազար քաղաքական կալանավորներ, իսկ ամբողջ յերկրի բանտերում և համակենտրոնացման ճամբարներում՝ մոտ 1 միլիոն: Զինվորական դատարանները շարունակում են մահվան դատավճիռներ հանել:

Բելգիայում արգելված է կոմկուսակցության կենտրոնական օրգան «Վուա դյուպյոպլ» թերթը և ամբողջ գավառական կոմունիստական մամուլը: Կառավարության մեջ ներկայացուցիչներ ունեցող այսպես կոչված «բանվորական» կուսակցության լիդերները ձգտում են արգելել կոմկուսակցությունը և ձերբակալել տալ նրա անդամներին: Հակապատերազմական ագիտացիայի և այն պահանջի համար, որ Բելգիան իսկական չեզոքություն



պահպանի, արդեն ձերբակալված են բազմաթիվ բանվորներ:

Իտալիայում բանտում և աքսորում են գտնվում 48 հազար քաղաքական կալանավորներ: Վերջին ժամանակներս արտակարգ ատյաններն ուժեղացրել են իրենց դատաստանը: Պոլա ռայոնից 40 բանվորներ, գյուղացիներ և արհեստավորներ դատապարտված են ընդհանուր առմամբ 200 տարվա բանտարկության: Մի խումբ բանվորներ Բոլոնում ստացան ընդհանուր առմամբ 300 տարվա բանտարկություն, նրանցից 5 հոգի՝ քսանական տարի: Միլանում բանվոր Մայրին և բժիշկ Մարտուանոն դատապարտվեցին յուրաքանչյուրը 14 տարվա բանտարկության, Գարիբալդիի անվան ինտերնացիոնալ գումարտակի մարտիկ՝ լիվոռնոցի Սիվանո Սկոտտոն՝ 18 տարվա բանտարկության: Հաբեշստանում իտալական օկուպանտները բնակչության դիմադրությանը պատասխանում են արյունոտ տեռորով: Հրկիզում են ամբողջ գյուղեր, բնակիչներին գնդակահարում են գնդացիրներով: Ամարա նահանգի գեներալ-նահանգապետ գեներալ Ռոտտորինո Մանցետտիի հրամանում ասված է. «բնաջնջել

բոլոր խռովարարներին, գույքը բռնագրավել, տները վառել»։ Այս հրամանը կատարվում է հետևյալ կերպ. «խռովարարների» կանանց և յերեխաներին քշում են խրճիթները, իսկ հետո կրակ են տալիս։

Հոլանդիայում արգելված են հակապատերազմական ժողովները։ Վլիլանդ կղզում համակենտրոնացման ճամբար է կազմակերպված քաղաքական էմիգրանտների համար, որտեղ նրանց ստիպում են ծանր աշխատանք կատարել։ Ցավա կղզու բանտերում (հոլանդական գաղութ Ինդոնեզիա) ներկայումս կան 30 հազար քաղաքական կալանավորներ։

Զվիցերիայում կոմունիստական մամուլը դեռևս նախքան պատերազմը արգելվեց Ժնևի, Վաադտի և Նեյնբուրգի կանտոններում։ Այս տարվա սկզբին զինվորական իշխանությունների պահանջով արգելվեց միակ կոմունիստական թերթը՝ «Ֆրեյհեյտ»-ը, որը դեռևս շարունակում էր լույս տեսնել Զվիցերիայում։ Պատերազմի սկզբում Զվիցերիայում ձերբակալված քաղաքական էմիգրանտները պահվում են տաժանակիր աշխատանքի բանտում քրեական հանցագործների հետ միասին։



Լյուքսեմբուրգում պատերազմի սկզբում մի հրաման հրատարակվեց յերկրի սահմաններից բոլոր քաղաքական կալանավորներին վտարելու մասին, արգելվեցին ժողովները բաց յերկնքի տակ, իսկ առանձին քաղաքներում՝ նաև փակ շենքերում։ Բոլոր կոմունիստները գտնվում են ոստիկանության հատուկ վերահսկողության տակ, որը շարունակ խուզարկություններ է կատարում նրանց տներում։ Պելինգենում ոստիկանությունն արգելեց ԽՍՀՄ-ի խաղաղության քաղաքականությունը բացատրող մի թռուցիկ, և նրա տպագրման առնչությամբ կատարվեցին մի շարք ձերբակալություններ։

Սկանդինավյան յերկրներում, որոնց կառավարությունների կազմի մեջ են գտնվում սոցիալ-դեմոկրատիայի ղեկավարները, սանձարձակ հալածանք է կազմակերպված կոմունիստների դեմ։ Շվեդիայում կարճ ժամանակամիջոցում մի քանի անգամ իրար վրա բռնագրավվեց կոմկուսակցության կենտրոնական օրգան «Նյու Դագ» թերթը, ինչպես նաև «Արբայտեր Տիդնինգեն» և «Նոռռոկենոֆլամամ» գավառական թերթերը։ Խմբագիր-

ները դատապարտվեցին բանտարկության: Հրատարակիչների միությունը բոյկոտ հայտարարեց կոմունիստական մամուլին, ձգտելով նրան նյութապես քայքայել: Երկրում մտցված է արտակարգ մի օրենք, վորը փաստորեն վերացնում է անձի, բնակարանի, նամակագրության, տեղափոխության և մամուլի ազատությունը: Շվեդական ռեակցիայի հետքերով է գնում Նորվեգիականը: Դանիայում հալածանքի ցայտուն օրինակ է հանդիսանում ռեակցիայի արշավանքը պրոլետարական գրող Մարտին Անդերսեն Նեկսեյի դեմ՝ խոշոր կապիտալիստների և հոգևորականների գլխավորությամբ:

ԱՄՆ-ում պատերազմի սկզբից կատաղի կամպանիա ծավալվեց բոլոր այն անձանց և կազմակերպությունների դեմ, վորոնք պահանջում էին ԱՄՆ-ի իսկական չեզոքություն: Ձերբակալվեց և 4 տարվա բանտարկության դատապարտվեց կոմկուսակցության գլխավոր քարտուղար Էրլ Բրաուդերը, իբրև թե անձնագիր ստանալիս սխալ տեղեկություններ տալու համար: «Վոչ ամերիկական» կազմակերպությունների գործունեությունը հետազոտող



կոմիտեն, վորին պարլամենտն էր նշանակել դեռևս պատերազմից շատ առաջ, իր աշխատանքը կենտրոնացրել է այն բանում, վոր հալածում է կոմկուսակցությանը, ՄՈՊՐ-ի ամերիկական սեկցիային և մյուս կազմակերպություններին, վորոնք պայքարում են Ամերիկայի Միացյալ Նահանգներն իմպերիալիստական պատերազմի մեջ ներգրավելու և ամերիկական կապիտալիստների կողմից Մաններհայմի սպիտակ-ֆիննական բանդաներին օգնություն ցույց տալու դեմ:

Բուրժուազիայի և նրա «սոցիալիստական» արբանյակների կողմից աշխատավորության դեմ ծավալված ռեակցիայի և սպիտակ տեռորի ներկայի խրախճանքը գալիս է հաստատելու «Կոմունայի վերաբերյալ ընթերցանության պլան»-ում Լենինի տված հետևյալ բնութագրության ամբողջ ճշտությունը.

«Բուրժուազիան կանի ամեն քայլ: Այսօր՝ լիբերալներ, ռադիկալներ, հանրապետականներ, վաղը դավաճանություններ, գնդակահարություններ» (Լենին, հ. XXX, եջ 112):

# ՇԱՐԺՈՒՄ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՀՐՁԻԳՆԵՐԻ ԴԵՄ

Անգլո-Ֆրանսիական իմպերիալիստական բուրժուազիային հաջողվեց ժողովուրդներին քաշել պատերազմի մեջ: Բայց հարաճուն տեմպերով մասսաների մեջ աճում է դժգոհությունը պատերազմից և նրա ուղեկիցները հանդիսացող թանկությունից, աշխատավարձի կրճատումից, աշխատանքային որվա յերկարացումից, հարկերի ավելացումից, քայքայումից և աղքատացումից, ռեակցիայի խրախճանքից:

Ֆրանսիայում հակապատերազմական շարժումը գլխավորում է ընդհատակ քշված կոմունիստական կուսակցությունը: Բուրժուական թերթերի ռեակցիոն դեպուտատների և ներքին գործերի մինիստր Ալբեռ Սարրոյի խոստովանությամբ կոմկուսակցությունը մեծ ակտիվություն է ծավալում: Գործարաններում տեղի յեն ունենում «գաղտնի հավաքույթներ», աշխատանքները դանդաղեցված տեմպով են կատարվում, մասսայաբար տարածվում են հակապատերազմական թռուցիկներ և ընդհատակյա «Յումանիտե»-ն: Կոմկուսակցությունը,— Սարրոյի հայտարարությամբ,



— յերկրում ունի հարյուր հազարավոր հավատարիմ կողմնակիցներ. կոմունիստներին հաճույքով են շենք տրամադրում, վորպեսզի նրանք կարողանան թաքնվել հետապնդումներից և տպագրել իրենց գրականությունը: Ֆրանսիական բանակի զինվորների տրամադրությունը բուրժուազիային տագնապ է ներշնչում: Թերթերը լեցուն են Մաժինոյի գծի վրա դասավորված զորամասերում իշխող «պատերազմական սևամաղձության» վերաբերյալ, հարազատներից և մերձավորներից անջատող այս «տարօրինակ պատերազմի» նկատմամբ զինվորների զայրույթի վերաբերյալ հաղորդագրություններով: Բուրժուազիայի անհանգստությունն առավել ես հասկանալի յե այն պատճառով, վոր Ֆրանսիայում կենդանի յե մարտի 18-ին Մոնմարտրի բանվորների ու զինվորների յեղբայրացման վերաբերյալ հիշողությունները և չի մոռացված խռովահույզ 1917 թվականը, յերբ զորքերն ամբողջ էշելոններով թողնում եյին ճակատը և շարժվում դեպի Փարիզ, պահանջելով անհապաղ հաշտություն կնքել: Բուրժուազիան հիշում է նաև Ֆրանսիական նավատորմի նավաստ-

ների հերոսական պաշտպանությունը Սև ծովում, որն ուղղված էր հակախորհրդային ինտերվենցիայի դեմ և որին ղեկավարում էր ընկ. Անդրե Մարտին:

Ֆրանսիայի սոցիալիստական կուսակցության մեջ խառնակություն է տիրում, կուսակցության շարքային անդամները վրդովված են Բլյումի և ընկ. դավաճանությամբ, բանվորները հրաժարվում են կարդալ սոցիալիստական կուսակցության օրգան «Պոպյուլեր» թերթը, որի տիրաժն ընկնում է կատաստրոֆիկ կերպով:

Անգլիայում թերթերի խմբագրությունները և մենիստրների դրասենյակները ողողվում են աշխատավորների մասսայական ժողովների հեռագրերով և բանաձևերով, որոնք պահանջում են անհապաղ դադարեցնել պատերազմը: Անգլիական կոմկուսակցության օրգան «Դեյլի Ուորկեր» թերթն ամեն օր տպագրում է այդպիսի բանաձևեր— դրանք գալիս են լեյբորիստական կուսակցության կազմակերպություններից, պրոֆմիություններից, պրոֆմիութենական ավագների կոմիտեներից, կոոպերատիվ կազմակերպություններից և այլն: Առ 15-ը դեկտեմբերի «Դեյլի



Ուորկեր»-ի հաշվով նման որոշումներ էին ընդունել 275 կազմակերպություն. այդ ժամանակվանից նման յելույթների թիվը խիստ ավելացել է: Բանվորական ժողովները խարանում են լեյբորիստական և տրեդ-յունիոնիստական պարագլուխների դավաճանական սոր քաղաքականությունը: 34 հազար հոգի միավորող բանվորական կազմակերպությունների կոնֆերենցիայում, որը կայացավ Լոնդոնի հարավային մասում, որոշվեց պարլամենտական լրացուցիչ ընտրություններին թեկնածու առաջադրել պատերազմի հակառակորդ Սիրտոնին: Այդ առթիվ ընդունված բանաձևում ասված է. «բանվոր դասակարգի և բանվորական շարժման շահերից ելնելով, անհրաժեշտ է առաջադրել այնպիսի թեկնածու, որը դեմ է դուրս գալիս պատերազմին, ներկա կառավարության քաղաքականությանը և այսպես կոչված քաղաքական զինադադարին» (խոսքը վերաբերվում է այն դասակարգային զինադադարին, որ կնքվեց պատերազմի ամբողջ տևողության ընթացքում մեկ կողմից՝ լեյբորիստական ու պրոֆմիութենական ղեկավարության, մյուս կողմից՝ կապիտալիստների միջև):

Խոշորագույն թափ է ստացել շարժումը սպիտակ-ֆիննական բանդաների նկատմամբ այն օգնության դեմ, որը ֆիննական ժողովրդի դահիճներին ցույց է տալիս Անգլիայի, Ֆրանսիայի, ԱՄՆ-ի և այլ երկրների ռեակցիոն բուրժուազիան: Համաշխարհային հասարակայնության լավագույն, ազնվագույն ներկայացուցիչները հանդես են գալիս բողոքելու սպիտակ ֆիննական ջոկատների համար «կամավորներ» հավաքագրելու դեմ, մաններհեյմականներին զենք ուղարկելու դեմ, կապիտալիստական մամուլի հակախորհրդային կամպանիայի դեմ:

Դանիայի պրոլետարական գրող Մարտին Անդերսեն-Նեքսեն, որին բուրժուազիան և սոցիալ-դավաճանները հալածում են նրանց կեղտոտ մեքենայությունները մերկացնելու համար, Ֆինլանդիայի դեմոկրատական Հանրապետության ժողովրդական կառավարության նկատմամբ նրա համերաշխության համար, դանիական «Արբեյդեր-Բլադեթ» թերթում տպագրեց «Խավարի ձայնը» վերնագրով մի հոդված: Այդ հոդվածում նա ցույց է տալիս սոցիալ-դեմոկրատական քաղքենիական դար-



շահոտ ճահիճը և նրա «աստծուն»— անսկզբունքայնության, ցինիկական խավարամոլության, ծախվածության մարմնավորումը: Ռեակցիոներները հալածում են Նեքսեին, վառում են նրա գրքերը, բայց ուժ չունեն թուլացնելու նրա ազդեցությունը Դանիայի և ամբողջ Սկանդինավիայի բանվորների վրա:

Ամերիկացի հայտնի գրող Տեոդոր Դրայզերը, վերջերս առաջարկ ստացավ մասնակցելու մաններհայմյան սպիտակ Ֆինլանդիայի օգնության ֆոնդի օգտին հանգանակություն կատարելու կամպանիային: ԱՄՆ-ում այդ կամպանիան ներկայումս գլխավորում է Միացյալ Նահանգների նախկին պրեզիդենտ և ամերիկյան խոշոր բուրժուազիայի ամենից ավելի ռեակցիոն շրջանների ներկայացուցիչ Հերբերտ Հուվերը:

Կատեգորիկ կերպով մերժելով այդ առաջարկը, Դրայզերն իր պատասխանի մեջ հիշեցրեց, որ ամերիկյան բուրժուազիայի մտքովն անգամ չանցավ իր ժամանակին օգնություն ցույց տալու ո՛չ հաբեշ ժողովրդին, ո՛չ չին ժողովրդին, ո՛չ էլ Իսպանիայի դեմոկրատական հանրապետ-

տության բնակչությանը: Դրայզերը հայտարարեց, որ չի հաջողվի իրեն «շուլալել ամերիկյան (կամ, ավելի շուտ, անգլիական) պրոպագանդայի շքերթին»:

Թոմ Մունին, որն ավելի քան յերկու տասնամյակ անցկացրեց ամերիկյան կապիտալիզմի բանտում և այնտեղից դուրս կորզվեց ՄՈՊՐ-ի գլխավորած աշխատավորների միջազգային հուժկու շարժման շնորհիվ, Նյու-Յորքի «Դեյլի Ուորկեր» թերթի թղթակցին ասաց հետևյալը.

«Իմպերիալիստները Ֆինլանդիայում բազա յեն տեսնում Խորհրդային Միության դեմ պատերազմելու համար: Այժմ հավանական է, որ նրանք կամենան այդ բազան տարածել ամբողջ Սկանդինավիայի վրա: Նախկին պրեզիդենտ Հուվերը ներկայումս խիստ մտահոգված է «ֆինների» բարեկեցությամբ: Նա չեր հուզվում, յերբ խոսքը Իսպանիայի, Հաբեշստանի և Չինաստանի մասին եր: Մեզանում նա հրամայեց գնդակահարել պատերազմի վետերաններին: Հիմա նա հուզվում է մաններհայմյան ավազակախմբի համար, ֆիննական ժողովրդի դահիճների համար»:

Անգլիական պարլամենտի անդամ Պրիտ-



տը, հանդես գալով պրոֆմիությունների և լեյբորիստական կուսակցության անդամների կոնֆերենցիայում, մերկացրեց սերտ կապը սպիտակ-ֆիննական ու անգլիական բուրժուազիայի միջև և պատգամավորներին կոչ արավ վճռականորեն պայքարել ռեակցիոներների հակախորհրդային կամպանիայի դեմ:

Կամդեն Հաունի (Լոնդոն) ելեքտրիկ բանվորների միությունը դատապարտեց Ֆինլանդիայի ժողովրդական կառավարության և ԽՍՀՄ-ի դեմ ուղղված զրպարտական կամպանիան, կոչ անելով աջակցել կոմունիստների լոզունգին— «վո՛չ մի օգնություն դահիճ Մաններհայմին»: Այդ նույն լոզունգով անցկացավ հակապատերազմական մի միտինգ, որ գումարել եր կոմկուսակցությունը Լոնդոնի Հայդ-Պարկում, հավաքելով 7 հազար հոգու: Սպիտակ-ֆիններին օգնելու դեմ բանաձևեր են ընդունել անգլիական բանվորների և աշխատավորների հարյուրավոր ժողովները Պորտսմուտում, Ջետամոյում, Ֆլիտվուդում, Տորնտոնում և այլն: Նման հայտարարությամբ հանդես յեկավ հայտնի իրլանդացի դրամատուրգ Ո'Կեյսին: Ամեն օր

նչվում են լեյբորիստական կուսակցությունից դուրս գալու և կոմկուսակցության մեջ մտնելու դեպքեր:

Օր-օրին ուժեղանում է հակապատերազմական շարժումը Սկանդինավիայում: Սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների կոնֆերենցիան Բյուկան քաղաքում (Նորվեգիա) մի բանաձև ընդունեց, վորի մեջ հայտարարվում է, թե «Բյուկանի բանվորները համերաշխ են ազատության և անկախության համար պայքարող ֆինն բանվորների ու գյուղացիների հետ: Կոնֆերենցիան վճռականապես բողոքում է սպիտակ-ֆիններին ռազմական օգնություն ցույց տալու դեմ, վորպիսին կարող է հանգել մեր յերկրի չեզոքության խախտումը»:

Նույնպիսի վորոշումներ են ընդունել Կատեյվեր ավանի նորվեգացի ձկնորսների միտինգը, 600 նորվեգիացի գյուղացիների ժողովը Ռանես ռայոնում և սոցիալ-դեմոկրատական յերիտասարդությունը Գամմերե քաղաքում, ուր վիժեցվեց նորվեգիական «բանվորական» կուսակցության լիդերների կողմից սպիտակ ֆինների պաշտպանության օգտին հրավիրված մի-



տինգը: Օդդա քաղաքում ի թիվս ուրիշների կոմկուսակցության կազմակերպության մեջ մտավ նորվեգիական պրոֆմիութենական հայտնի գործիչ Արտուր Բերգը: Նորվեգիական «Արբեյտեր Բլադեт» թերթում հրատարակվեց Օսլո քաղաքի մետաղագործների պրոֆմիության ղեկավարության դիմումը: «Օսլոյի մետաղագործները,— ասված է դիմումի մեջ,— զայրույթով խարանում են այն պրովոկացիոն գործունեությունը, վոր տարվում է վերջին ժամանակներս Սկանդինավիայում պատերազմի հրձիգների ագենտների կողմից:

Օսլոյի մետաղագործների պրոֆմիությունը կառավարությունից պահանջում է, վոր նա վճռական միջոցներ ձեռք առնի պատերազմի հրձիգների դեմ, վորոնք փորձում են յերկիրը քաշել պատերազմի մեջ: Պրոֆմիությունը վճռականապես դատապարտում է սպիտակ գվարդիականների կողմից կատարվող հանգանակությունը սպիտակ-ֆիններին օգնություն ցույց տալու համար»:

Նույնպիսի վճռականությամբ են հանդես գալիս Շվեդիայի աշխատավորության բազմաթիվ կազմակերպություններ. ցայտուն

օրինակ են հանդիսանում Էսկիլստուն արդյունաբերական կենտրոնի 7 հազար մետաղագործների ընդունած բանաձևերը, շվեդական տպագրիչների պրոֆմիության բողոքը, բանվորական ժողովների բողոքները Դանիայում և Եվրոպայի մյուս երկրներում:

Սպիտակ ֆիններին օգնելու դեմ ուղղված զայրույթի ալիք է բարձրացել ԱՄՆ-ում: Մաններհայմների—տաններների դեմ, ֆինլանդիայի դեմոկրատական հանրապետության օգտին հանդես են գալիս հազարավոր ֆինն էմիգրանտներ: Ամերիկական թերթերում օր—օրին տպագրվում են բանվորների, ուսանողների, աշխատավորության, ինտելիգենցիայի ներկայացուցիչների նույնպես հայտարարություններ, ժողովների բանաձևեր: Ահա ռեակցիոներների կամպանիայի ձախողման օրինակներից մեկը, որ հաղորդում է «Դեյլի Ուորկեր» թերթը:

Դետրոյտում (ամերիկական ավտոմոբիլային արդյունաբերության կենտրոն) Կրայսլերի ավտոմոբիլի գործարանում արկղեր էին դրված սպիտակ ֆինլանդիայի օգտին բանվորների մեջ հանգանակություն



կատարելու համար: Բանվորները փողի փոխարեն այդ արկղերը լցրին մետաղյա և այլ ուտիլով: Մի քանի արկղների վրա լոզունգներ գրվեցին, որոնք պահանջում էին ոչ թե մաններհայմականներին, այլ ամերիկական գործազուրկներին օգնելու ֆոնդ ստեղծել:

Նյու—Յորքում (Նյու—Ջերսի նահանգ) լույս տեսնող նեգրական «Նյու—Ջերսի Հերալդ Նյուս» թերթը գրում էր.

«Մենք անկեղծորեն համակրում ենք ֆինն ժողովրդի ազատագրման պայքարը, ճիշտ այնպես, ինչպես մենք մեր համակրանքն էինք արտահայտում նրան 1919—1920 թվականներին, երբ Մաններհայմն սպանում էր ֆինն բանվորներին և գյուղացիներին: Մաններհայմն այն ժամանակ զենք էր ստանում ամերիկական, անգլիական և ֆրանսիական կապիտալիստներից, որոնք նրան օգնում էին այն բանի համար, որ ֆինն ժողովուրդն ուզում էր լինել ազատ և անկախ»:

Համալսարանի ուսանողները Կոլորադո նահանգում դեմ դուրս եկան մաններհայմականների օգտին հանգանակություն կազմակերպելու փորձին: Ուսանողական

կազմակերպության նախագահը հայտարարեց, որ այդ կամպանիան մղվում է ԱՄՆ-ը պատերազմի մեջ քաշելու նպատակով: Համալսարանի ղեկավար Ստերնսը աջակցեց ուսանողներին և կարգադրեց համալսարանի շենքից վերցնել հանգանակության համար դրված արկղները:

Բոլոր յելույթները, մասսաների այս հսկայական, աճող շարժումն ընդդեմ իմպերիալիստական պատերազմի և ռեակցիայի, ընդդեմ իմպերիալիստների հակախորհրդային մեքենայությունների, գալիս են ասելու, որ յերկու դասակարգային բանակների ուժերի հարաբերականությունն ամենևին այն չէ, ինչ բանվորական շարժման արշալույսին, փարիզյան կոմունայի ժամանակներում:

Գրոհի գաղափարը հասունանում է մասսաների գիտակցության մեջ, որոնք խելոքացել են յոթը տասնամյակների պայքարի փորձով, անց են կացել առաջին համաշխարհային իմպերիալիստական պատերազմի աղետների ու սոսկումների միջով, մտցվել են նոր պատերազմի մեջ և համեմատության են դնում մահացող կապիտալիստական ռեժիմի դժոխքը խորհուրդների յերկրի նոր,



սոցիալիստական կյանքի հսկայական աբերկրալի բարգավաճման հետ:

# ԵԼ ԱՎԵԼԻ ՍՄՐՍՑՆԵԼ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼ ՀԱՄԵՐԱՇԽՈՒԹՅԱՆ ԿԱՊԵՐԸ

Գրոհի գաղափարը հասունանում է մասսաների գիտակցության մեջ, և միաժամանակ ամրանում են աշխատավորների ինտերնացիոնալ համերաշխության կապերը, համաշխարհային սոցիալիստական հեղափոխության վերջնական հաղթանակի յերաշխիքը:

Այդ հեղափոխական ինտերնացիոնալ համերաշխության մարմնացումն էր Փարիզյան Կոմունան, և իզուր չէ, որ մարտի 18-ի օրը անց է կենում ամբողջ աշխարհում, որպես մարտական ինտերնացիոնալիզմի օր, սպիտակ տեռորի բոլոր զոհերին օգնելու օր, ՄՈՊՐ-ի օր:

Կոմունայի ջարդից հետո քաղաքական էմիգրանտներին, փարիզյան բարիկադների մարտիկներին բարոյական և նյութական օգնություն կազմակերպելու գործն իր վրա վերցրեց Մարքսը: Նա ստեղծեց օգնության էմիգրանտական ֆոնդ, հետա-

պնդվող կոմունարներին հայթհայթում էր անձնագիր և այլ հարկավոր փաստաթղթեր, աջակցում էր նրանց ազատագրելու հակահեղափոխության ճանկերից: Պրոլետարական հեղափոխության կադրերը պահպանելու, նրանց մասին անխոնջ կերպով հոգալու գործին մեծ ուշադրություն էր դարձնում Մարքսը, և նրա այդ պատգամը մեր օրերում իրագործում է ՄՈՊՐ-ը:

Աշխարհում վոչ մի յերկիր չկա, վորտեղ չգործեն մոպրական կազմակերպությունները, վորոնք հանդիսանում են ժողովրդական լայն մասսաների ինտերնացիոնալ դաստիարակության դպրոցը և միաժամանակ կալանավորված հեղափոխականներին, նրանց ընտանիքներին, հեղափոխության ընկած մարտիկների ընտանիքներին, քաղաքական էմիգրանտներին օգնող կազմակերպությունը: Հսկայական են ՄՈՊՐ-ի ծառայությունները Չինաստանում և Իսպանիայում, անգնահատելի յե նրա աշխատանքը իմպերիալիստական նոր պատերազմի պայմաններում, յերբ սպիտակ տեռորի խրախճանքն ուժեղանում է վոչ թե օրով, այլ ժամով: Կապիտալիստական յերկրների ճնշող մեծամասնության մեջ



ՄՈՊՐ-ի կազմակերպությունները ստիպված են յեղել ընդհատակ գնալ, վորպիսին բարդացնում է նրանց աշխատանքը և դրա հետ մեկտեղ ուժեղացնում է նրանց պատասխանատվությունը, ինչքանով վոր քաղաքական կալանավորների և սպիտակ տեռորի այլ զոհերի թիվն ավելանում է, մեծանում է օգնության կարիքը:

Այս պայմաններում առանձնապես մեծ աշխատանք է ընկնում ԽՍՀՄ-ի ՄՈՊՐ-ի— միջազգային մոպրական շարժման այդ ամենահզոր սեկցիայի վրա: ԽՍՀՄ-ի ՄՈՊՐ-ը, վորի աշխատանքի ծրագիրն է հանդիսանում ընկեր Ստալինի ցուցումը ԽՍՀՄ-ի բանվոր դասակարգի ինտերնացիոնալ պրոլետարական կապերը բուրժուական յերկրների բանվոր դասակարգի հետ ուժեղացնելու և ամրապնդելու անհրաժեշտության մասին, իրենից ներկայացնում է խոշորագույն հասարակական մի կազմակերպություն: Առ 1-ը հոկտեմբերի 1939 թվի ԽՍՀՄ-ում կային ՄՈՊՐ-ի 10·171·891 անդամներ, վորոնք միավորված եյին 143,838 բջիջներում: 17 տարում, 1923-ից մինչև 1939 թիվը ներառյալ, հեղափոխության մարտիկների օգնության

ֆոնդն է մոտ 180·889·272 միլիոն ռուբլի:

ՄՈՊՐ-ի յուրաքանչյուր կազմակերպության աշխատանքի հիմքը մասսաների ինտերնացիոնալ դաստիարակությունն է, միջազգային իրադարձությունների լայն բացատրությունը, արտասահմանյան մեր յեղբայրների հերոսական պայքարի լուսաբանումը: Ինտերնացիոնալ դաստիարակությունը կոմունիստական դաստիարակության անքակտելի մասն է: Նա բարձրացնում է մասսաների քաղաքական ակտիվությունը, յուրաքանչյուր խորհրդային հայրենասերի մեջ ամրապնդում է համայն աշխարհի աշխատավորության հայրենիքի՝ ԽՍՀՄ-ի սոցիալիստական շինարարության միջազգային մեծ նշանակության հստակ ըմբռնումը:

Մարտի 18-ի որը ՄՈՊՐ-ը մոբիլիզացիայի յե յենթարկում իր ուժերը աշխատավորական նորանոր մասսաներ իր շարքերը ներգրավելու համար:

Մարտի 18-ի որը մոպրական աշխատանքի ստուգատեսի որն է:

Մարտի 18-ի որը խորհրդային ժողո-



վուրդը և բոլոր յերկրների աշխատավորները բոցավառ վողջույն են հղում կապիտալի բոլոր կալանավորներին, սպիտակ տեռորի բոլոր զոհերին:

Մարտի 18-ի որը համայն աշխարհում կդղրդա մարտական լոզունգը— կեցցե՛ բոլոր յերկրների աշխատավորների ինտերնացիոնալ համերաշխությունը:

---

## ԷՎԱԿՈՒԱՑԻԱ

Դա պատերազմի ժամանակ բնակչության, հիմնարկների, ձեռնարկների, գույքի ուղարկումն է վտանգի ենթակա վայրից ավելի անվտանգ վայր։ Ազգաբնակչությունից էվակուացիայի են ենթարկվում առաջին հերթին երեխաները, կանայք, ծերունիները, հիվանդները։

Անգլիական իշխանությունները, հենց որ պատերազմը սկսվեց, սկսեցին երեխաներին, կանանց և հիվանդներին արդյունաբերական խոշոր կենտրոններից էվակուացիայի ենթարկել մանր քաղաքներն ու գյուղական վայրերը։ Էվակուացիան, որի պլանը վաղուց էր պատրաստված, այնքան անկազմակերպ անցկացվեց, որ աշխատավոր բնակչությանը և հատկապես երեխաներին ու մայրերին անհամար աղետների ենթարկեց։

«Չափազանցություն չի լինի ասել,— գրում է «Մանչեստեր գարդիեն» թերթը,



—որ ոչ մի տեղ էվակուացիան լրիվ չափով նպատակին չհասավ և որ մի քանի, ամենից ավելի վտանգավոր զոնաներում այն կատարելապես ձախողվեց»։ Թերթը բերում է այսպիսի տվյալներ. Սենդերլենդից հեռացված է էվակուացիայի ենթակա երեխաների մոտ մեկ երրորդը միայն, Միդլսրոյից՝ մոտ քառորդը։ Իսկ չէ՞ որ այդ քաղաքները գտնվում են Անգլիայի արևելյան, վտանգի ենթակա ափին։ Ծանր արդյունաբերության խոշորագույն կենտրոններից մեկը հանդիսացող Շեֆիլդից էվակուացիայի է ենթարկված երեխաների միայն մեկ վեցերորդ մասը։

Էվակուացիայի ենթարկված երեխաները մասսայաբար վերադառնում են իրենց քաղաքները։ Պաշտոնական տվյալների համաձայն, էվակուացիայի ենթարկված 1230 հազար հոգուց մինչև դեկտեմբերի կեսը հետ են վերադարձել 540 հազար հոգի, որոնցից 233 հազարը՝ դպրոցականներ։ Այդ բացատրվում է մի քանի պատճառներով։ Երեխաներին տեղավորում են գերադանցապես չքավորների ընտանիքներում (հարուստները զանազան պատրվակներով, անշուշտ, իրենց ազատում են «գլխացա-

վանքից»), վորտեղ տանը տեղ էլ նեղվածք է և չի բավականացնում ամենաանհրաժեշտը: Յերեխաները սովորելու տեղ չունեն, անգործ թրև են գալիս: Հետո, եվակուացիայի յենթարկված յերեխաների ծնողներից իշխանությունները չափազանց մեծ գումարներ են պահանջում ապրուստի համար: Որինակ, ինչպես հաղորդում է «Դեյլի Ուորկեր» թերթը, գործատուները պարտավոր են յերեխաների համար կրկնակի ավելի վճարել, քան նրանց համար ստացած նպաստը, և հետո հագուստի համար ջոկ, վոտնամանները նորոգելու համար ջոկ և այլն: Հատուկ հանձնաժողովը, վորը հետազոտեց եվակուացիայի յենթարկված կանանց և յերեխաների դրությունը, հաղորդեց Անգլիայի առողջապահության մինիստրությանը, վոր «յեթե ամենավճռական միջոցները ձեռք չառնվեն եվակուացիայի յենթարկվածների կյանքի պայմանները բարելավելու համար, ապա եվակուացիայի ամբողջ պլանի ձախողումը լոկ ժամանակի խնդիր է հանդիսանում»:

Յերեխաների եվակուացիան նաև ամբողջ դպրոցական կյանքի լիակատար խանգարում առաջացրեց յերկրում, վորովհետև



այն քաղաքներում, վորտեղից եվակուացիայի յե յենթարկված ազգաբնակչության մի մասը, դպրոցները փակված են և արգելված է բաց անել: «Մեր կրթական սիստեմը փլատակի յե վերածվել,— գրում է «Մանչեստեր գարդիեն»-ը,— և այնուամենայնիվ մենք չհասանք մեր տանջալի ջանքերի նպատակին— վտանգի յենթակա բնակչությունն անվտանգ ռայոնները հեռացնելուն»:

Ֆրանսիայում, վորտեղ եվակուացիայի յենթարկվեց ազգաբնակչությունը սահմանամերձ մարզերից և խոշոր կենտրոններից, եվակուացիան նույնպես չափից դուրս վատ °անցկացվեց: Եվակուացիայի յենթարկված բնակչությունն աղետալի դրության մեջ է:

---

